Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7

ԱՊՐԻԼ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի



# ԲԼՈԿՆՈՏ



№ 7

ԱՊՐԻԼ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


| | | Էջ |
|---|---|---|
| 1. | «Ասսոշիեյտեդ Պրեսսի» թղթակից պ-րն էդդի Հիլմորի հարցերը ընկ. Ստալինին և ընկ. Ստալինի պատասխանները | 3 |
| 2. | Ինֆորմացիոն հաղորդագրություն ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումի մասին | 6 |
| 3. | ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիան | 8 |
| 4. | Խորը կերպով ուսումնասիրել սեսիայի որոշումները | 34 |
| 5. | Մեր օրացույցը | 39 |
| 6. | Բանաստեղծություն | 42 |


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռ. 23—30։



# «ԱՍՍՈՑԻԵՅՏԵԴ ՊՐԵՍՍԻ» ԹՂԹԱԿԻՑ Պ-ՐՆ ԷԴԴԻ ՀԻԼՄՈՐԻ ՀԱՐՑԵՐԸ ԸՆԿ. ՍՏԱԼԻՆԻՆ ԵՎ ԸՆԿ. ՍՏԱԼԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

*«Ասսոշիեյտեդ Պրեսսի» թղթակից պ-րն Հիլմորը դիմեց ընկ. Ստալինին միջազգային դրության հետ կապված մի շարք հարցերով։ Ստորև բերվում են պ-րն Հիլմորի հարցերը և ընկ. Ստալինի պատասխանները։*

*ՀԱՐՑ. Դուք ի՞նչ նշանակություն եք տալիս Միավորված Ազգերի Կազմակերպությանը, որպես միջազգային խաղաղության պահպանման միջոցի։*

*ՊԱՏԱՍԽԱՆ. Ես մեծ նշանակություն եմ տալիս Միավորված Ազգերի Կազմակերպությանը, որովհետև նա խաղաղության պահպանման և միջազգային անվտանգության լուրջ գործիք է։ Այդ միջազգային կազմակերպության ուժն այն է, որ նա հիմնվում է պետությունների իրավահավասարության սկզբունքի վրա և ոչ թե մեկը մյուսի*

նկատմամբ տիրապետության սկզբունքի վրա։ Եթե Միավորված Ազգերի Կազմակերպությանը հաջողվի առաջիկայում էլ պահպանել իրավահավասարության սկզբունքը, ապա նա անտարակույս դրական մեծ դեր կխաղա ընդհանուր խաղաղության և անվտանգության պահպանման գործում։

ՀԱՐՑ. Ձեր կարծիքով ինչի՞ց է առաջ եկել պատերազմի ներկայիս երկյուղը, որ կրում են շատ մարդիկ շատ երկրներում։

ՊԱՏԱՍԽԱՆ. Ես համոզված եմ, որ ո՛չ ազգերը, ո՛չ էլ նրանց բանակները չեն ձգտում նոր պատերազմի,— նրանք ուզում են խաղաղություն և ձգտում են պահպանել խաղաղությունը։ Ուրեմն, «պատերազմի ներկայիս երկյուղը» առաջ է գալիս ո՛չ այդ կողմից։ Ես կարծում եմ, որ «պատերազմի ներկայիս երկյուղը» առաջ է գալիս քաղաքական որոշ խմբերի գործողություններով, խմբեր, որոնք զբաղված են նոր պատերազմի պրոպագանդայով և այդպիսով սերմանում են երկպառակություն և անվստահություն։

ՀԱՐՑ. Ներկայումս ի՞նչ պետք է անեն ազատասեր երկրների կառավարությունները ամբողջ աշխարհում խաղաղություն և հան-



գստություն պահպանելու համար։

ՊԱՏԱՍԽԱՆ. Անհրաժեշտ է, որ հասարակայնությունը և պետությունների կառավարող շրջանները լայն հակապրոպագանդա կազմակերպեն նոր պատերազմի պրոպագանդիստների դեմ և խաղաղության պահպման օգտին, որպեսզի նոր պատերազմի պրոպագանդիստների ո՛չ մի ելույթ չմնա առանց պատշաճ հակահարվածի հասարակայնության և մամուլի կողմից, որպեսզի այդպիսով ժամանակին մերկացվեն պատերազմի հրձիգները և նրանց հնարավորություն չտրվի խոսքի ազատությունը չարաշահել ընդդեմ խաղաղության շահերի։

22 մարտի, 1946 թ.



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Օրերս Մոսկվայում տեղի ունեցավ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի հերթական պլենումը:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը քննարկեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի քննարկմանը ներակա հարցերը: ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը անհրաժեշտ գտավ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամների կազմը լրացնել ընկ. ընկ. Լ. Պ. Բերիայով և Գ. Մ. Մալենկովով և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածուների կազմը՝ ընկ. ընկ. Ն. Ա. Բուլգանինով և Ա. Ն. Կոսիգինով:

Պլենումը հաստատեց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Կազմբյուրոն հետևյալ կազմով՝ ընկ. ընկ. Ի. Վ. Ստալին, Գ. Մ. Մալենկով, Ա. Ա. Ժդանով, Ա. Ա. Կուզնեցով, Գ. Մ. Պոպով, Ն. Ա. Բուլգանին, Ն. Ա. Միխայլով, Լ. Զ. Մեխլիս, Ն. Ս. Պատոլիչև, Վ. Մ. Անդրիանով, Գ. Ֆ. Ալեքսանդրով, Ն. Ն.



Շատալին, Վ. Վ. Կուզնեցով, Մ. Ի. Ռոդիոնով, Մ. Ա. Սուսլով:

Պլենումը հաստատեց ՀամԿ(բ)Պ Կենտկոմի քարտուղարներ ընկ. ընկ. Ի. Վ. Ստալինին, Գ. Մ. Մալենկովին, Ա. Ա. Ժդանովին, Ա. Ա. Կուզնեցովին և Գ. Մ. Պոպովին:

——O——

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## Միության Սովետի և Ազգությունների Սովետի 1946 թվի մարտի 19-ի համատեղ նիստի մասին

*Մարտի 19-ին, երեկոյան ժամը 7-ին, Կրեմլում, Կրեմլի Մեծ Պալատում տեղի ունեցավ Միության Սովետի և Ազգությունների Սովետի համատեղ նիստը։*

*Նախագահում է Միության Սովետի Նախագահ դեպուտատ* Ա. Ա. Ժդանովը։

*ՍՍՌՄ Գերագույն Սովետը անցնում է Գերագույն Սովետի Նախագահության ընտրությանը։*

*Դեպուտատ* Ա. Ա. Կուզնեցովի *առաջարկով Գերագույն Սովետն ընդունում է հետևյալ օրենքը ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության քանակական կազմի մասին.*

*«Սահմանել, որ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության*



*Գերագույն Սովետի Նախագահությունը ընտրվում է հետևյալ կազմով՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ, նրա 16 տեղակալները, Նախագահության քարտուղար և Նախագահության 15 անդամ։*

*Համապատասխան փոփոխություններ մտցնել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 48-րդ հոդվածում»։*

*Նախագահողը հրապարակում է դեպուտատ* Մ. Ի. Կալինինի *հետևյալ դիմումը.*

*«ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստին նախագահող ընկ.* Ա. Ա. Ժդանովին։

*Նկատի ունենալով իմ վատառողջ վիճակը, խնդրում եմ ՍՍՌՄ Գերագույն Սովետին՝ ինձ ազատել ապագայում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի պոստից։*

*Մ. ԿԱԼԻՆԻՆ*

*19 մարտի 1946 թվի»։*

*Մ. Ի. Կալինինի դիմումի կապակցությամբ, նախագահող* Ա. Ա. Ժդանովը *դիմում է դեպուտատներին հետևյալ խոսքերով.*

— Ընկե՛ր դեպուտատներ։

Թույլ տվեք մի քանի խոսք ասել Մ. Ի. Կալինինի դիմումի առթիվ։

Ընկեր Կալինինը տառապում է աչքի հիվանդությամբ։ Այդ հիվանդությունը ուղղակի խոչընդոտ է դարձել նրա կողմից ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի պարտականությունները կատարելու համար։ Ես կարծում եմ, որ Գերագույն Սովետը, նկատի ունենալով այդ հանգամանքը, ստիպված կլինի բավարարել Մ. Ի. Կալինինի խնդիրքը։

Դրա հետ միաժամանակ ես կարծում եմ, որ արտահայտած կլինեմ Գերագույն Սովետի դեպուտատների ընդհանուր կարծիքը, եթե ցանկություն հայտնեմ, որ Միխայիլ Իվանովիչ Կալինինը ընտրվի Գերագույն Սովետի Նախագահության անդամ, որտեղ նա կկարողանա գործադրել իր բազմակողմանի փորձն ու գիտելիքները։

Դեպուտատ Ա. Ա. Կուզնեցովի առաջարկով, որը հանդես եկավ Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Ադրբեջանական, Ուզբեկական ու Լատվիական ՍՍՌ-ների մի խումբ դեպուտատների կողմից, ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն ընտրում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հետևյալ կազմով.



ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝

Նիկոլայ Միխայլովիչ Շվերնիկ— դեպուտատ ՌՍՖՍՌ Սվերդլովի օկրուգից։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի տեղակալներ՝

Միխայիլ Սերգեևիչ Գրեչուխա— դեպուտատ Ուկրաինական ՍՍՌ-ի Բերեժանի օկրուգից։

Նիկիֆոր Յակովլևիչ Նատալևիչ— դեպուտատ Բելոռուսական ՍՍՌ-ի Սլուցկի օկրուգից։

Աբդուվալի Մումինով— դեպուտատ Ուզբեկական ՍՍՌ-ի Նամանգանի գյուղական օկրուգից։

Աբդիսամետ Կազակպաև— դեպուտատ Ղազախական ՍՍՌ-ի Ակմոլինսկի օկրուգից։

Գեորգի Ֆյոդորովիչ Ստուրուա— դեպուտատ Վրացական ՍՍՌ-ի Սամտրեդիի օկրուգից։

Միր Բաշիր Ֆատտախ օղլի Կասումով— դեպուտատ Ադրբեջանական ՍՍՌ-ի Սաբիրաբադի օկրուգից։

Յուստաս Իգնովիչ Պալեցկիս— *դեպուտատ Լիտվական ՍՍՌ-ի Պանևեժի օկրուգից։*

Ֆյոդոր Գրիգորևիչ Բոյկո— *դեպուտատ Մոլդավական ՍՍՌ-ի Եդինեցի օկրուգից։*

Ավգուստ Մարտինովիչ Կիրխենշտեյն— *դեպուտատ Լատվիական ՍՍՌ-ի Ցեսսկի օկրուգից։*

Տուրաբայ Կուլատով— *դեպուտատ Կիրգիզական ՍՍՌ-ի Ուզգենի օկրուգից։*

Մինովար Շագադաև— *դեպուտատ Տաջիկական ՍՍՌ-ի Գարմի օկրուգից։*

Մացակ Պետրոսի Պապյան— *դեպուտատ Հայկական ՍՍՌ-ի Ստեփանավանի օկրուգից։*

Ալլաբերդի Բերդիև— *դեպուտատ Թուրքմենական ՍՍՌ-ի Կագանովիչի օկրուգից։*

Իոգաննես Յակովիչ Վարես— *դեպուտատ Էստոնական ՍՍՌ-ի Պյարնայի օկրուգից։*

Օտտո Վիլհելմովիչ Կուուսինեն— *դեպուտատ Կարելո-Ֆիննական ՍՍՌ-ի Կուրկիոկի օկրուգից։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար՝*

Ալեքսանդր Ֆյոդորովիչ Գորկին— *դե-*



*պուտատ Չուվաշական ՍՍՌ-ի Կանաշի օկրուգից։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամներ՝*

Միր-Ջաֆար-Աբբասովիչ Բագիրով— *դեպուտատ Ադրբեջանական ՍՍՌ-ի Բաքու-Ստալինյան օկրուգից։*

Սեմյոն Միխայլովիչ Բուդյոննի— *դեպուտատ Ուկրաինական ՍՍՌ-ի Շեպետովի օկրուգից։*

Նիկոլայ Իվանովիչ Գուսարով— *դեպուտատ Մոլոտովի մարզի Ստալինսկի օկրուգից։*

Գալեյ Աֆզալեթդինովիչ Դինմուխամեդով— *դեպուտատ Թաթարական ԱՍՍՌ-ի Նովոշեշմինի օկրուգից։*

Միխայիլ Իվանովիչ Կալինին— *դեպուտատ ՌՍՖՍՌ-ի Լենինգրադի քաղաքային օկրուգից։*

Դեմյան Սերգեևիչ Կորոտչենկո— *դեպուտատ Ուկրաինական ՍՍՌ-ի Ամուր-Նիժնե-Դնեպրովսկի օկրուգից։*

Օլգա Անտոնովնա Լաուրիստին— *դեպուտատ Էստոնական ՍՍՌ-ի Խարյուսի արևելյան օկրուգից։*

Գեորգի Մաքսիմիլյանովիչ Մալենկով—

դեպուտատ Մոսկվա քաղաքի Լենինգրադի օկրուգից։
Գիլման Վիլդանովիչ Նիկմաջանով— դեպուտատ Բաշկիրական ԱՍՍՌ-ի Բելեբեևի օկրուգից։
Պյոտր Սերգեևիչ Պոպկով— դեպուտատ Լենինգրադ քաղաքի Ֆրունզեի օկրուգից։
Գեորգի Միխայլովիչ Պոպով— դեպուտատ Մոսկվա քաղաքի Կիրովի օկրուգից։
Ադիլ Գիրեյ Տախտարով— դեպուտատ Դաղստանյան ԱՍՍՌ-ի Մախաչկալայի քաղաքային օկրուգից։
Եվդոկիա Իլինիչնա Ուրալովա— դեպուտատ Բելոռուսական ՍՍՌ-ի Գոմելի օկրուգից։
Մատվեյ Ֆյոդորովիչ Շկիրյատով— դեպուտատ ՌՍՖՍՌ-ի Տուլա—Ռյազանի օկրուգից։
Ուսման Յուսուպովիչ Յուսուպով— դեպուտատ Ուզբեկական ՍՍՌ-ի Տաշկենտ—Ստալինյան օկրուգից։
ՍՍՌՄ Գերագույն Սովետը այնուհետև անցնում է ՍՍՌՄ Կառավարության՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետ կազմելու հարցի քննարկմանը։
Նախագահողը հաղորդում է, որ նրա



անունով ընկեր Ի. Վ. Ստալինից ստացվել է հետևյալ առաջարկը կառավարության կազմի մասին.
«ՍՍՌՄ Գերագույն Սովետի Միության Սովետի և Ազգությունների Սովետի համատեղ նիստի նախագահ ընկ. Ա. Ա. Ժդանովին։
Գերագույն Սովետը, 1946 թվի մարտի 15-ի իր որոշմամբ ինձ հանձնարարել էր Գերագույն Սովետի հաստատմանը ներկայացնել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կառավարության՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կազմը։
Այդ հանձնարարությանը համապատասխան, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի քննարկմանն եմ ներկայացնում ՍՍՌՄ Կառավարության՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կազմը։
Խնդրում եմ ՍՍՌՄ Գերագույն Սովետին հաստատել՝
ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ և Զինված Ուժերի Մինիստր՝ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին։
ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ և Արտաքին Գործերի Մի-

նիստր՝ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ՝ Լավրենտի Պավլովիչ Բերիային։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ՝ Անդրեյ Անդրեևիչ Անդրեևին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ և Արտաքին Առևտրի Մինիստր՝ Անաստաս Իվանովիչ Միկոյանին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ՝ Ալեքսեյ Նիկոլաևիչ Կոսիգինին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ և Պետական Պլանային Հանձնաժողովի Նախագահ՝ Նիկոլայ Ալեքսեևիչ Վոզնեսենսկուն։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ՝ Կլիմենտ Եփրեմովիչ Վորոշիլովին։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի Տեղակալ և Շինանյութերի Արդյունաբերության մինիստր՝ Լազար Մոյիսեևիչ Կագանովիչին։

Հաղորդակցության Ճանապարհների Մինիստր՝ Իվան Վլադիմիրովիչ Կովալևին։



Կապի Մինիստր՝ Կոնստանտին Յակովլևիչ Սերգեյչուկին։

Ծովային Նավատորմի Մինիստր՝ Պյոտր Պետրովիչ Շիրշովին։

Գետային Նավատորմի Մինիստր՝ Զոսիմ Ալեքսեևիչ Շաշկովին։

Արևմտյան շրջանների Ածխարդյունաբերության Մինիստր՝ Դմիտրի Գրիգորևիչ Օնիկին։

Արևելյան շրջանների Ածխարդյունաբերության Մինիստր՝ Վասիլի Վասիլևիչ Վախրուշևին։

Հարավային և Արևմտյան շրջանների Նավթարդյունաբերության Մինիստր՝ Նիկոլայ Կոնստանտինովիչ Բայբակովին։

Արևելյան շրջանների Նավթարդյունաբերության Մինիստր՝ Միխայիլ Անդրիանովիչ Եվսեյենկոյին։

Էլեկտրակայանների Մինիստր՝ Դմիտրի Գեորգիևիչ Ժիմերինին։

Էլեկտրաարդյունաբերության Մինիստր՝ Իվան Գրիգորևիչ Կաբանովին։

Սև Մետալուրգիայի Մինիստր՝ Իվան Թեվադրոսովիչ Թևոսյանին։

Գունավոր Մետալուրգիայի Մինիստր՝ Պյոտր Ֆադեևիչ Լոմակոյին։

Քիմիական Արդյունաբերության Մինի-

*տր*՝ Միխայիլ Գեորգիևիչ Պերվուխինին:

*Ավիացիոն Արդյունաբերության Մինիստր*՝ Միխայիլ Վասիլևիչ Խրունիչևին:

*Նավաշինարարական Արդյունաբերության Մինիստր*՝ Ալեքսեյ Ադամովիչ Գորեգլյադին:

*Գյուղատնտեսական Մեքենաշինության Մինիստր*՝ Բորիս Լվովիչ Վաննիկովին:

*Սպառազինության Մինիստր*՝ Դմիտրի Ֆյոդորովիչ Ուստինովին:

*Ծանր Մեքենաշինության Մինիստր*՝ Նիկոլայ Ստեպանովիչ Կազակովին:

*Ավտոմոբիլային Արդյունաբերության Մինիստր*՝ Ստեպան Ակոպովիչ Ակոպովին:

*Մեքենաշինության և Գործիքաշինության Մինիստր*՝ Պյոտր Իվանովիչ Պարշինին:

*Միջոցների Մինիստր*՝ Բորիս Ալեքսանդրովիչ Դվինսկուն:

*Ծանր Ինդուստրիայի Ձեռնարկությունների Շինարարության Մինիստր*՝ Պավել Ալեքսանդրովիչ Յուդինին:

*Ռազմական և Ռազմա-Ծովային Ձեռնարկությունների Շինարարության Մինիստր*՝ Սեմյոն Զախարովիչ Գինզբուրգին:

*Ցելյուլոզի ու Թղթի Արդյունաբերության Մինիստր*՝ Գեորգի Միխայլովիչ Օրլովին:

*Թեթևի Արդյունաբերության Մինիստր*՝ Տիխոն Բորիսովիչ Միտրոխինին:



*Դազգահաշինության Մինիստր*՝ Ալեքսանդր Իլլարիոնովիչ Եֆրեմովին:

*Տրանսպորտային Մեքենաշինության Մինիստր*՝ Վյաչեսլավ Ալեքսանդրովիչ Մալիշևին:

*Վառելանյութային Ձեռնարկությունների Շինարարության Մինիստր*՝ Ալեքսանդր Նիկոլաևիչ Զադեմիդկոյին:

*Շինարարական և Ճանապարհային Մեքենաշինության Մինիստր*՝ Կոնստանտին Միխայլովիչ Սոկոլովին:

*Սննդարդյունաբերության Մինիստր*՝ Վասիլի Պետրովիչ Զոտովին:

*Ձկնարդյունաբերության Մինիստր*՝ Ալեքսանդր Ակիմովիչ Իշկովին:

*Մսեղենի և Կաթնեղենի Արդյունաբերության Մինիստր*՝ Պավել Վասիլևիչ Սմիրնովին:

*Թեթև Արդյունաբերության Մինիստր*՝ Սերգեյ Գեորգիևիչ Լուկինին:

*Տեքստիլ Արդյունաբերության Մինիստր*՝ Իվան Կորնեևիչ Սեդինին:

*Անտառարդյունաբերության Մինիստր*՝ Միխայիլ Իվանովիչ Սալտիկովին:

*Հողագործության Մինիստր*՝ Իվան Ալեքսանդրովիչ Բենեդիկտովին:

Ֆինանսների Մինիստր՝ Արսենի Գրիգորևիչ Զվերևին:

Առևտրի Մինիստր՝ Ալեքսանդր Վասիլևիչ Լյուբիմովին:

Ներքին Գործերի Մինիստր՝ Սերգեյ Նիկիֆորովիչ Կրուգլովին:

Պետական Անվտանգության Մինիստր՝ Վսևոլոդ Նիկոլաևիչ Մերկուլովին:

Արդարադատության Մինիստր՝ Նիկոլայ Միխայլովիչ Ռիչկովին:

Առողջապահության Մինիստր՝ Գեորգի Անդրեևիչ Միտերևին:

Պետական Վերահսկողության Մինիստր՝ Լև Զախարովիչ Մեխլիսին:

Տեխնիկական Կուլտուրաների Մինիստր՝ Նիկոլայ Ալեքսանդրովիչ Սկվորցովին:

Կինեմատոգրաֆիայի Գործերի Կոմիտեի Նախագահ՝ Իվան Գրիգորևիչ Բոլշակովին:

Արվեստի Գործերի Կոմիտեի Նախագահ՝ Միխայիլ Բորիսովիչ Խրապչենկոյին:

Բարձրագույն Դպրոցի Գործերի Կոմիտեի Նախագահ՝ Սերգեյ Վասիլևիչ Կաֆտանովին:

Պետական Բանկի Նախագահ՝ Յակով Իլյիչ Գոլևին:

Ի. ՍՏԱԼԻՆ

19 մարտի 1946 թ.։



Դեպուտատ Ն. Ս. Խրուշչևը, որը հանդես եկավ Մոսկվայի, Լենինգրադի, Ուկրաինական, Բելոռուսական, Վրացական, Ղազախական և Լիտվական ՍՍՌ-ների մի խումբ դեպուտատների կողմից, և դեպուտատ Վ. Մ. Անդրիանովը, որը հանդես եկավ Ուզբեկական ու Լատվիական ՍՍՌ-ների և Ուրալի, Սիբիրի ու Հեռավոր Արևելքի մարզերի մի խումբ դեպուտատների կողմից, առաջարկ են մտցնում՝ հաստատել ընկեր Ի. Վ. Ստալինի կողմից ներկայացված ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կազմը:

ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն հաստատում է Ի. Վ. Ստալինի կողմից ներկայացված ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կազմը:

Այնուհետև ՍՍՌՄ Գերագույն Սովետը անցավ ՍՍՌՄ Գերագույն Դատարան ընտրելու հարցի քննարկմանը:

Դեպուտատ Ն. Յա. Նատալևիչի առաջարկով, որը հանդես եկավ Մոսկվայի, Բելոռուսական ու Մոլդավական ՍՍՌ-ների մի խումբ դեպուտատների կողմից, ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն ընտրում է ՍՍՌՄ Գերագույն Դատարանը հետևյալ կազմով.

ՍՍՌՄ Գերագույն Դատարանի Նախագահ՝ Իվան Տերենտևիչ Գոլյակով։

ՍՍՌՄ Գերագույն Դատարանի անդամներ՝ Նիսախոն Աբդուրախմանովա, Ռուսման Աբդուրախմանով, Պյոտր Վասիլևիչ Աբրամով, Իվան Տիմոֆեևիչ Ակսենով, Իվան Իվանովիչ Ալյոխին, Զինաիդա Ալեքսեևնա Անդրեևա-Պրավոլամսկայա, Իվան Վասիլևիչ Անիպչենկո, Արսեն Վարդանի Հարությունյան, Աբդուլ Ախադ Կարաօղլի Ախադով, Յուրգիս Բլիեկա, Միխայիլ Ալեքսեևիչ Բոյարկին, Ալեքսեյ Ալեքսեևիչ Բուլենկով, Իվան Յակովլևիչ Գոլև, Յան Միխայլովիչ Գրինբերգ, Ստեպան Մակարովիչ Գրիշին, Անդրեյ Գրիգորևիչ Գուսև, Գեորգի Նիկոլաևիչ Դանիլով, Իվան Վասիլևիչ Դետիստով, Լեոնիդ Դմիտրիևիչ Դմիտրիև, Արկադի Ալեքսանդրովիչ Դոբրովոլսկի, Սերգեյ Դմիտրիևիչ Դրինչև, Բյաշիմ Դուրդիև, Իվան Միխեևիչ Զարյանով, Նատալյա Միխայլովնա Իվանովա, Միխայիլ Միխայլովիչ Իսաև, Պյոտր Ալեքսեևիչ Կամերոն, Ֆյոդոր Ֆյոդորովիչ Կարավայկով, Եմելյան Միտրոֆանովիչ Կիշլյան, Պավել Տիխոնովիչ Կլոպով, Ռախիա Յակովլևնա Կորոբկո, Միխայիլ Մակարովիչ Կրուգլիկով, Սերգեյ



Տերենտիևիչ Լոգինև, Նիկիտա Ստեպանովիչ Լուչկին, Աֆնիա Ալեքսանդրովնա Մարինովա, Իվան Օսիպովիչ Մատուլևիչ, Վասիլի Սեմյոնովիչ Մաշկով, Աննա Նազարովնա Նազարովա, Նիկոլայ Ալեքսանդրովիչ Նաումով, Իոնա Տիմոֆեևիչ Նիկիտչենկո, Պավլա Մատվեևնա Նովիսկայա, Աննա Միխայլովնա Օվչիննիկովա, Ալեքսանդր Մոյսեևիչ Օրլով, Պավել Եֆիմովիչ Օրլովսկի, Պանտելեյ Պետրովիչ Պավլենկո, Պելագեյա Սեմյոնովնա Պանկրատովա, Անդրեյ Անդրեևիչ Պիոնտկովսկի, Վալերի Վիկտորովիչ Պոկրովսկի, Կոնստանտին Ալեքսանդրովիչ Պանկրատով, Աննա Ալեքսանդրովնա Ռոմանովա, Դորա Լավրենտևնա Ռոստովցևա, Վլադիմիր Միխայլովիչ Սակաչ, Անդրեյ Պետրովիչ Սոլոդիլով, Նիկոլայ Ալեքսեևիչ Սոլոնիցին, Աբդիկասիմ Սուպատաև, Անդրեյ Գրիգորևիչ Սուսլին, Վլադիմիր Վասիլևիչ Սյուզին, Պետրոս Մարկոսի Թեյմուրազյան, Ռուդոլֆ Գուստավովիչ Տիմմ, Օշակբայ Տլեգենով, Վասիլի Վասիլևիչ Ուլրիխ, Վլադիմիր Ալեքսեևիչ Ուսպենսկի, Իվան Կուզմիչ Ցվետկով, Լևան Կիրիլովիչ Չիչուա, Վալենտինա Ալեքսեևնա Չուրսինա, Եկատերինա Սերգեևնա Շաքալինա, Նիկոլայ Կիրիլովիչ Շևչենկո, Մարիա Նիկիֆո-

ռովնա Տորինա, Գավրիիլ Իվանովիչ Յուրգենս:

ՍՍՌՄ Գերագույն Դատարանի ժողովրդական ատենակալներ են միաձայն ընտրվում՝

Եգոր Պրոկոֆևիչ Ագարկով, Մարիա Իվանովնա Բարանովա, Ալեքսանդր Իոսիֆովիչ Բատուրին, Օսկար Գանսովիչ Բեռռ, Ալեքսանդր Իվանովիչ Վիխորև, Զոյա Դուրդիև, Վլադիմիր Միխայլովիչ Եգորով, Իվան Իվանովիչ Ելագին, Շեքեր Երմագամբետովա, Վասիլի Վասիլևիչ Եֆրեմով, Ալեքսանդր Ալեքսեևիչ Կոզլով, Արկադի Ալեքսանդրովիչ Կոսմոդեմյանսկի, Իլյա Յակովլևիչ Կուզմին, Մարիա Վասիլևնա Լեբեդևա, Ստեպան Վասիլևիչ Նեզնանով, Իվան Կուզմիչ Նովիկով, Եվա Յանովնա Պալդին-Ռուսիս, Ալեքսանդր Իվանովիչ Պոկուսայ, Միխայիլ Իվանովիչ Պոլիկարպով, Իվան Իվանովիչ Պոպով, Վիլիս Պետրովիչ Սամսոնս, Նելլի Իվանովնա Ճոլմ, Անանի Կալիստրատովիչ Չերեպանով, Վյաչեսլավ Անդրեևիչ Շկուրին, Յակով Միտրոֆանովիչ Տուչկա:

Այնուհետև ՍՍՌՄ Գերագույն Սովետը քննարկեց ՍՍՌՄ Դատախազ նշանակելու հարցը:



Դեպուտատ Գ. Ա. Բորկովի առաջարկով, ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընդունում է ՍՍՌՄ Դատախազին ՍՍՌՄ Գլխավոր Դատախազի կոչումը տալու հետևյալ Օրենքը.

«Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը որոշում է՝

ՍՍՌՄ Դատախազին տալ ՍՍՌՄ Գլխավոր Դատախազի կոչում:

Անհրաժեշտ փոփոխություն մտցնել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի համապատասխան հոդվածների մեջ»:

Դեպուտատ Բորկովի առաջարկով, որը հանդես եկավ Մոսկվայի, Ղազախական ու Կիրգիզական ՍՍՌ-ների մի խումբ դեպուտատների կողմից, ՍՍՌՄ Գերագույն Սովետը միաձայն ՍՍՌՄ Գլխավոր Դատախազ նշանակեց դեպուտատ Կոնստանտին Պետրովիչ Գոռշենինին:

Դեպուտատ Ս. Վ. Կաֆտանովի առաջարկով, ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընդունում է հետևյալ որոշումը՝ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տեքստի մեջ փոփոխություններ ու լրացումներ մտցնելու համար խմբագրական հանձնաժողով կազմելու մասին:

«1. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տեքստի

մեջ փոփոխություններ և լրացումներ մըտցնելու համար, կազմել խմբագրական հանձնաժողով, հետևյալ կազմով՝

Նախագահ Անդրեյ Յանուարևիչ Վիշինսկի— դեպուտատ Սարատովի մարզի Վոլսկի օկրուգից:

Հանձնաժողովի անդամներ՝ Գեորգի Ֆյոդորովիչ Ալեքսանդրով—դեպուտատ Սարատովի մարզի Էնգելսի օկրուգից:

Իվան Տերենտիևիչ Գոլյակով— դեպուտատ ՌՍՖՍՌ-ի Ուֆայի օկրուգից:

Ալեքսանդր Ֆյոդորովիչ Գորկին— դեպուտատ Չուվաշական ԱՍՍՌ-ի Կանաշի օկրուգից:

Կոնստանտին Պետրովիչ Գորշենին— դեպուտատ ՌՍՖՍՌ-ի Հյուսիսային օկրուգից:

Յուստաս Իգնովիչ Պալեցկիս—դեպուտատ Լիտվական ՍՍՌ-ի Պանեվեժի օկրուգից:

Գեորգի Նիկոլաևիչ Պալցև— դեպուտատ Վլադիմիրի մարզի Վլադիմիրի օկրուգից:

Գեորգի Վասիլևիչ Պերով— դեպուտատ Էստոնական ՍՍՌ-ի Տալլինի ծովային օկրուգից:

Ալեքսանդր Նիկոլաևիչ Պոսկրեբիշեվ —



դեպուտատ Բաշկիրական ԱՍՍՌ-ի Բելեբեևի օկրուգից:

Պյոտր Նիկոլաևիչ Պոսպելով—դեպուտատ Կուրսկի մարզի Օբոյանսկի օկրուգից:

Նիկոլայ Միխայլովիչ Ռիչկով — դեպուտատ Մարիական ԱՍՍՌ-ի Սերնուրի օկրուգից:

2. Հանձնարարել խմբագրական հանձնաժողովին՝ առաջարկներ մտցնել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի տեքստի փոփոխությունների և լրացումների մասին և ներկայացնել դրանք ՍՍՌՄ Գերագույն Սովետի հերթական սեսիայի քննարկմանը»:

Սեսիայի օրակարգը սպառված է: Նախագահողը՝ Միության Սովետի Նախագահ դեպուտատ Ա. Ա. Ժդանովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի նիստը հայտարարում է փակված:

———●———



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

107. Հաստատել Հայկական ՍՍՌ-ում 1950 թվի համար արդյունաբերական արտադրանքի հիմնական տեսակների արտադրության պլան հետևյալ չափերով.

| | |
|---|---|
| Էլեկտրոէներգիա (միլիոն կիլովատ ժամ) | 360 |
| Ավտոդողեր (հազար հատ) | 180 |
| Սուպերֆոսֆատ (հազար տոննա) | 15 |
| Կաուստիկ սոդա (հազար տոննա) | 12 |
| Մետաղահատ դազգահներ (հատ) | 500 |
| Ցեմենտ (հազար տոննա) | 120 |
| Լուսամուտի ապակի (հազար քառ. մետր) | 300 |
| Բամբակեղեն գործվածքներ (հազար մետր) | 44.800 |
| Մետաքսեղեն գործվածքներ (հազար մետր) | 2.600 |



| | |
|---|---|
| Բրդեղեն գործվածքներ (հազար մետր) | 400 |
| Գուլպաներ (հազար զույգ) | 15.400 |
| Կոշկեղեն (հազար զույգ) | 2.550 |
| Բուսական յուղ (տոննա) | 6.000 |
| Շաքար (տոննա) | 6.500 |
| Խաղողի գինի (հազար դեկալիտր) | 2.000 |
| Միս (հազար տոննա) | 8,4 |
| Կենդանական յուղ (տոննա) | 800 |

108. Հաստատել Հայկական ՍՍՌ-ում 1946—1950 թվերի համար հիմնական աշխատանքների ծավալը 1.420 միլիոն ռուբլու չափով, այդ թվում ռեսպուբլիկական տնտեսության գծով՝ 374 միլիոն ռուբլի։

109. Հնգամյակի ընթացքում հիդրոէլեկտրոկայանների կարողությունն ավելացնել 102 հազար կիլովատով ի հաշիվ գոյություն ունեցող հիդրոկայանների ընդլայնման և Զանգու գետի ափին կառուցվող նոր հիդրոկայանի առաջին հերթի գործարկման։ Կառուցել և գործարկել կաբելի գործարանը և մանր հիդրոտուրբինների գործարանը՝ տարեկան 300 տուրբինի թողարկումով։

Ապահովել Քաջարանի պղնձա-մոլիբդենային հանքաքարի հանույթը և հարստա-

ցումը, կազմակերպել ալումինի արտադրությունը, 4 անգամ ավելացնել սինթետիկ կաուչուկի արտադրությունը և 2 անգամ՝ սոդայի արտադրությունը, զգալիորեն ընդլայնել ավտոդողերի արտադրությունը:

Ավարտել Երևանում մահուդի գործարանի շինարարությունը և Լենինականի Տեքստիլ կոմբինատին կից նախշող և ներկող գործարանի շինարարությունը: Ավարտել շաքարի գործարանի կառուցումը, կառուցել ապակե տարայի գործարանը, ընդլայնել կոնսերվների գործարանը: Ավելացնել մրգեղեն կոնսերվների, խաղողի գինու արտադրությունը, կառուցել կոնյակի նոր գործարան:

Ռեսպուբլիկական արդյունաբերության մեջ կազմակերպել գյուղատնտեսական մեքենաների և գույքի արտադրությունը: Կառուցել մետաղե և ապակե ամանեղենի գործարաններ, ճենապակու գործարան և վերանորոգման մեխանիկական գործարան:

Ռեսպուբլիկական ձեռնարկություններում 1950 թվին արդյունաբերական արտադրանքի արտադրությունը սահմանել 700 միլիոն ռուբլու չափով, այդ թվում տեղական պետական արդյունաբերության և արհեստա-



գործական կոոպերացիայի արտադրանքը՝ 160 միլիոն ռուբլու չափով:

110. 1950 թվի համար սահմանել ցանքատարածություններ 512 հազար հեկտարի չափով, որից կոլխոզներում՝ 480 հազար հեկտար, այդ թվում հացահատիկային կուլտուրաներ՝ 332 հազար հեկտար, որից կոլխոզներում՝ 315 հազար հեկտար, տեխնիկական կուլտուրաներ՝ 40 հազար հեկտար. բոստանա-բանջարանոցային կուլտուրաներ և կարտոֆիլ՝ 41,5 հազար հեկտար, որից կոլխոզներում՝ 30 հազար հեկտար, կերաբույսեր՝ 98 հազար հեկտար, որից կոլխոզներում՝ 95 հազար հեկտար:

Սահմանել բամբակենու ցանքատարածություններ 15 հազար հեկտարի չափով: Ընդլայնել բազմամյա տնկիների տարածությունը: Զարգացնել շաքարի ճակնդեղի արտադրությունը և մետաքսագործությունը: Ընդլայնել ծխախոտի ցանքատարածությունները և ավելացնել բերքատվությունը:

Շահագործման հանձնել հետևյալ ջրանցքները. Ստալինի անվան, Նորքի, Սուրբին Ջանգվի, Գառնիի: Իրագործել Արազդայանի տափաստանի ոռոգումը: 1946—1950 թվե-

րին ապահովել ջրովի տարածությունների աճը 23,5 հազար հեկտարի չափով:

1950 թվի վերջերին անասունների գլխաքանակը սահմանել հետևյալ չափերով. ձիեր 32,5 հազար գլուխ, որից կոլխոզներում՝ 28 հազար գլուխ. խոշոր եղջերավոր անասուններ 670 հազար գլուխ, որից կոլխոզներում՝ 350 հազար գլուխ. ոչխար և այծ 1.680 հազար գլուխ, որից կոլխոզներում՝ 1.100 հազար գլուխ, խոզեր 80 հազար գլուխ, որից կոլխոզներում՝ 48 հազար գլուխ: Բարելավել մթերատու անասունների տեսակը և ընդլայնել նրբագեղմ ոչխարաբուծությունը:

111. 1946—1950 թվերին սահմանել Հայկական ՍՍՌ-ի քաղաքներում պետական բնակելի ֆոնդի գործարկում 284 հազար քառ. մետրի չափով, որից տեղական Սովետների գծով 24 հազար քառ. մետրի չափով: Կառուցել նոր ջրմուղ. ընդլայնել կոյուղին և 15 կիլոմետրով երկարաձգել տրամվայի գիծը Երևանում, ընդլայնել Լենինականի ջրմուղը:

112. Հաստատել կուլտուրական շինարարության և առողջապահության հիմնական առաջադրանքները. 1950 թվին դպրոցների



թիվը հասցնել 1178-ի, սովորողների թիվը՝ 295 հազար մարդու և քաղաքներում ու գյուղական վայրերում հիվանդանոցային մահճակալների թիվը մինչև 6.700-ի:

(ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին օրենքից)

—○—



# ԽՈՐԸ ԿԵՐՊՈՎ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԵԼ ՍԵՍԻԱՅԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիան հաստատեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին Օրենքը:*

*Այդ պլանի հիմնական խնդիրները շարադրված են ընկեր Ստալինի այս տարվա փետրվարի 9-ի պատմական ճառում:*

*Վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև գերազանցել այն: Ընկեր Ստալինը խնդիր դրեց չորրորդ հնգամյակում բարձրացնել աշխատավորների կենսամակարդակը, օգնել մեր գիտնականներին ոչ միայն հասնելու, այլև մոտիկ ապագայում գերազանցելու ՍՍՌՄ-ի սահմաններից դուրս գիտության ձեռք բերած նվաճումները: Ժողովուրդների հան-*



*ճարեղ առաջնորդի ցուցումների հիման վրա կազմված նոր հնգամյակի պլանը միաձայն ընդունվեց ոչ միայն սեսիայում, այլև այն արժանացավ մեր երկրի բազմամիլիոն ժողովրդի միահամուռ հավանությանը:*

— Ստալինյան պլանը կկենսագործվի,— *այս խոսքերով դիմավորեց մեր Հայրենիքի ամեն մի աշխատավոր՝ հնգամյա պլանի Օրենքի հրատարակմանը:*

*Ստալինյան նոր հնգամյակի ընթացքում սովետական երկիրը է՛լ ավելի կաճի, է՛լ ավելի հզոր ու ծաղկուն կդառնա:*

*Զարգացման փայլուն հեռանկարներ են բացվում նաև մեր մեծ Հայրենիքի անբաժանելի մաս հանդիսացող Հայաստանի Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի առաջ:*

*«Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը 1950 թվին, 1940 թվի համեմատությամբ, ավելանում է 2,1 անգամ: Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ հնգամյակի ընթացքում կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կկազմի 1,4 միլիարդ ռուբ-*

լի։ Ծրագրվում է քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի զարգացումը Սևանի Կասկադի հիդրոռեսուրսների օգտագործման բազայի վրա։ Է՛լ ավելի է ընդարձակվում տեքստիլ և սննդի արդյունաբերությունը։ Ապահովվում է անասնաբուծության, շաքարի արդյունաբերության ցանքերի, շերամապահության, ինչպես նաև խաղողաբուծության և պտղաբուծության զարգացումը՝ ոռոգելի տարածությունները ավելացնելու բազայի վրա»։ (Ն. Ա. ՎՈԶՆԵՍԵՆՍԿԻ)։

Ահա թե որքան մեծ են ու պատասխանատու մեր պարտիական, սովետական կազմակերպությունների, մեր ամբողջ ժողովրդի առաջ կանգնած խնդիրները՝ Ստալինյան նոր հնգամյակում։

Սակայն սովետական պետությունը ամուր հենված մեր աշխատասեր, եռանդուն ու քաջարի ժողովրդի վրա, իր գոյության ընթացքում քիչ խնդիրներ չի լուծել, քիչ հաղթանակներ չի տարել։ Նա կհաղթանակի նաև այս անգամ։ Ստալինյան հնգամյա պլանը կկատարվի, որովհետև դա մեր երկրի միլիոնավոր ժողովուրդների կամքի դրսևորումն է, որովհետև այդ ժողովուրդներին



հաղթանակից հաղթանակ է առաջնորդում մեր բոլոր հաղթանակների հայր մեծ Ստալինը։

Գերագույն Սովետի որոշումները հրապարակված են մեր մամուլում, սակայն դրանով հարցը չի սպառվում։ Այդ որոշումները պետք է հասցվեն մեր գյուղի և քաղաքի բոլոր աշխատավորներին։ Այս գործում մեծ անելիքներ ունեն մեր պրոպագանդիստներն ու ագիտատորները։ Սեսիայի որոշումները պետք է ուսումնասիրվեն ամբողջ ժողովրդի կողմից։ Ամենակարճ ժամանակամիջոցում պետք է հասնել այն բանին, որ ամեն մի աշխատավոր խոր կերպով հասկանա սեսիայի որոշումների իմաստն ու նշանակությունը և որոշի իր տեղը Ստալինյան նոր հնգամյակի պլանի իրագործման համար մղվող մեծ պայքարում։

Գերագույն Սովետի որոշումների ուսումնասիրությունը չի կարող ավարտված համարվել միտինգներով կամ թերթերի հապճեպ ընթերցումով։ Այստեղ հարկավոր է ավելի հետևողական ու սիստեմատիկ աշխատանք կատարել։ Ամեն տեսակի շտապողականությունն ու մակերեսայնությունը այս գործում պետք է դատապարտվի։

Ընկեր պրոպագանդիստնե՛ր և ագիտատորնե՛ր, գործադրեցեք ձեր պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքի վիթխարի փորձը՝ Գերագույն Սովետի սեսիայի որոշումները մինչև վերջ, խոր ու բազմակողմանի ուսումնասիրելու համար։ Դրանով դուք կօգնեք մեր պարտիական օրգաններին՝ մոբիլիզացնելու մեր գյուղի և քաղաքի բոլոր աշխատավորներին՝ Ստալինյան չորրորդ հնգամյակի պլանը անթերի կատարելու համար մղվող պայքարում։

——○——

# ՄԵՐ Օրացույցը 1946

## ՄԱՅԻՍ

1 Մայիսի,—Աշխատավորության համաշխարհային տոնի օրը։
2 Մայիսի,—1945 թ. Կարմիր Բանակի զորամասերը լիովին գրավեցին Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը։
4 Մայիսի,—1935 թ. ընկեր Ստալինի ճառը Կրեմլի պալատում Կարմիր Բանակի ակադեմիականների թողարկման առթիվ։
5 Մայիսի,—Բոլշևիկյան մամուլի օրը։
1818 թ. ծնվեց Կարլ Մարքսը։
6 Մայիսի,—1941 թ. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագիրը ընկեր Ստալինին ՍՍՌՄ-ի Ժողովրդական Կոմիսարների Սովետի նախագահ նշանակելու մասին։
7 Մայիսի.— 1917 թ. Բոլշևիկների Համառուսական 7-րդ (ապրիլյան) կոնֆերանսի բացումը։

8 Մայիսի,—1945 թ. Բեռլինում ստորագրվեց գերմանական զինված ուժերի անվերապահ կապիտուլյացիայի մասին ակտը։

1945 թ. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հրամանագիրը մայիսի 9-ը Հաղթանակի տոն հայտարարելու մասին։

9 Մայիսի,—Հաղթանակի տոնը։

1945 թ. ընկեր Ստալինի դիմումը ժողովրդին։

10 Մայիսի.— 1945 թ. ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և Մոսկվայի կոմիտեի քարտուղար, Կարմիր Բանակի Գլխավոր Քաղվարչության պետ ընկ. Ա. Ս. Շչերբակովի մահը։

13 Մայիսի.— 1907 թ. ՌՍԴԲՊ 5-րդ համագումարի բացումը։

15 Մայիսի.— 1936 թ. Վ. Ի. Լենինի Կենտրոնական Թանգարանի բացումը Մոսկվայում։

17 Մայիսի,—1938 թ. ընկեր Ստալինի ճառը Կրեմլում բարձրագույն դպրոցի աշխատողների ընդունելությանը։

18 Մայիսի,—1800 թ. ռուս մեծագույն զորավար Ա. Վ. Սուվորովի մահը։ Ծնված 1730 թ.։



19 Մայիսի, — 1888 թվին ծնվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու ընկ. Ն. Մ. Շվերնիկը։

23 Մայիսի, —1924 թ. ՌԿ(բ)Պ 8-րդ համագումարի բացումը։

30 Մայիսի.— 1866 թ. ծնվեց հայ մեծանուն բանաստեղծ Հակոբ Հակոբյանը։ Մահացել է 1937 թվին։

—○—



## ԱՌԱՋԻՆ ԱՆՁՐԵՎ

Առաջին անձրև, թափվեցիր հողին,
Հայրենի հողին թափվեցիր առատ.
Թափվեցիր ուսին հողը հերկողի
Ու մեղմ խշշացիր ականջին նրա:

Ասացիր,— ոչինչ, թե այս աշխարհում
Լինում է ձմեռ, բուք ու փոթորիկ,—
Բայց, տե՛ս, բացվում է մի չքնաղ գարուն,
Ու բույրն է նրա բարձրանում ձորից:

Օ, թափվի՛ր, թափվի՛ր, անձրև առաջին,
Թափվիր մեր երկրի լեռների վրա.
Թող իմ հայրենի քարն էլ կանաչի
Ու ծաղիկ բուսնի ժայռերին նրա:

Որ սերմնացանի հետ ես էլ երթամ
Ու ջերմ համբուրեմ այն ծաղիկը վառ.
Չէ որ հոսել է մեր արյունը թարմ,
Այս չնաշխարհիկ գարունքի համար:

ՂԵՎՈՆԴ ԿՈՄՈՒՆԻ

---

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՐԻՊԱԿ

| էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 32 | 8 ն. | 24 | 34 |
| 41 | 5 ն. | 8-րդ | 13-րդ |

ՎՖ 00567 պատվեր № 443. տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 4/IV 1946 թ.

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլի-
գրաֆ և հրատ. վարչ. 2-րդ տպարան,
Երևան